ՃԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
4 ՅՆՎՐ. 1973

ՖՈՒԹՊՈԼ

# ՆԻՔԻԹԱ ՍԻՄՈՆԵԱՆ «ԱՐԱՐԱՏ»Ի ՄԱՐԶԻՉ ՆՇԱՆԱԿՈՒԵՑԱՒ

ԵՐԵՒԱՆ, (ԱՐՄԵՆՓՐԵՍ) — [illegible]ի Սփորթի վաստակաւոր վարպետ, վաստակաւոր մարզիչ Նիքիթա Սիմոնեանը նշանակուած է Երեւանի «Արարատ» ֆութպոլի խումբի աւագ մարզիչ։

Նիքիթա Սիմոնեանի անունը քաջ յայտնի է ոչ միայն Խ. Միութեան, այլ աշխարհի շատ երկիրներու ֆութպոլասէրներուն ու մասնագէտներուն։



46 ամեայ Սիմոնեանը ֆութպոլ սկսած է խաղալ իր հայրենի քաղաքի Սուխումի «Տինամօ» Ակումբին մէջ։ Շնորհալի պատանին շուտով կը նկատեն Մոսկուայի մասնագէտները եւ կը հրաւիրեն «Կրիլիա Սովետով» ակումբը։ Այստեղ երկու մրցաշրջան խաղալէ յետոյ, Նիքիթա Սիմոնեանը կը հրաւիրուի Մոսկուայի «Սպարտակ», որու կազմին մէջն ալ ընդհանուրին ճանաչման կ'արժանանայ։

Հայազգի մարզիկը չորս անգամ նուաճած է Խ. Միութեան ախոյեանի ոսկէ մետալ, յաղթած է Խ. Միութեան Բաժակի խաղարկութիւններու մէջ։ Նիքիթա Սիմոնեանը՝ ԽՍՀՄի Ազգային Հաւաքականի լաւագոյն կեդրոնական յարձակողը, մէկն է Խորհրդային այն տասնըմէկ ֆութպոլիստներէն, որ 1956 թուականին արժանացած է Մելպուրի Ողիմպիական Խաղերու Ախոյեանի ոսկէ մետալին։ Ան նաեւ Եւրոպայի ախոյեան է։

Ն. Սիմոնեանը խորհրդային ֆութպոլի լաւագոյն ռմբարկուն է։ Ան կը գլխաւորէ «Ֆեդոտովի Ակումբը», իր հաշուին արձանագրելով 154 կոլ։ Ի դէպ, «Արարատ»ի նոր մարզիչին կը պատկանի մէկ մրցաշրջանին մէջ խփուած կոլերու մրցանիշը (34), որը կանգուն է 1950 թուականէն ի վեր։

Հրաժեշտ տալով մրցասպարէզին, վերջին 11 տարուան մէջ (մէկամեայ ընդմիջումով) Նիքիթա Սիմոնեանը կը գլխաւորէր Մոսկուայի «Սպարտակ»ը։ Անոր ղեկավարութեամբ այդ Ակումբը երեք անգամ նուաճած է ԽՍՀՄի Բաժակը։ Ան որոշ ժամանակ մը եղած է նաեւ ԽՍՀՄի Ազգային Հաւաքականի աւագ մարզիչը։

## ՀԱՅԱՍՏԱՆԵԱՆ ՆՈՐ ՄՐՑԱՆԻՇ ԲԱՐՁՐԱՑԱՏԿԻ ՄԷՋ

Աւելի քան 200 մարզիկներ, որոնք կը ներկայացնէին «Փուրեվեստնիկ», «Սպարտակ» եւ «Սեւան» Մարմնամարզական Միութիւնները, վերջերս, իրենց մասնակցութիւնը բերին Հայաստանի Նախարարաց Խորհուրդի եւ Երեւան քաղաքի կողմէ կազմակերպուած աթլեթիզմի մրցումներուն։

Սոյն մրցաշարքի մասնակիցները լաւ արդիւնքներու տիրացան։ Արդարեւ, Հայկական Հանրապետութեան ոստումի մէջ մրցանիշ հաստատած Ռաֆֆիկ Աբրահամեանը յաջողեցաւ ցատկել 2 մ. 10 սմ.։



## «ՃԱՀԱԿԻՐ»ԻՆ

Ողբ. Կարօ Թուֆայեանի վաղաժամ եւ դառնակսկիծ մահուան տխուր առթիւ, փոխան ծաղկեպսակի, Տէր եւ Տիկին Աւետիս Գազանճեան կը նուիրեն 100 ե.դ.։

Օր. Նայիրի Մահսէրէճեանի ընդ Տոքթ. Յակոբ Մազմանեանի բարեբաստիկ ամուսնութեան առթիւ վասն խնդակցութեան Տէր եւ Տիկին Յովհաննէս Գաբրիէլեան կը նուիրեն 100 ե.դ.։

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

(ԵԳԻՊՏԱԿԱՆ ԴՐԱՀԵԿԱՆՈՎ)

### ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀԻՆ

Տոքթ. Յակոբ Մազմանեանի ընդ Օր. Նայիրի Մահսէրէճեանի բարեբաստիկ ամուսնութեան ուրախ առթիւ վասն խնդակցութեան կը նուիրեն.

Տիկին Զարուհի Եազուպեան 100
Տէր եւ Տիկ. Եղնիկ Վիզիրեան 100

Տէր եւ Տիկին Տիգրան Գուլոյեանները՝ աղջիկ զաւակով մը բախտաւորուած ըլլալնուն ուրախ առթիւ, Տէր եւ Տիկին Արամ Մովսէսեան կը նուիրեն 100 ե.դ.։

Ողբ. Կարօ Թուֆայեանի վաղաժամ եւ դառնակսկիծ մահուան տխուր առթիւ, վասն ցաւակցութեան կը նուիրեն.

Տէր եւ Տիկ. Սարգիս Գալաճեան 100
» » Նուպար Կէրիկեան 100
» » Զաւէն Գալաճեան 100

### ԵԿԵՂԵՑՒՈՅ ՊԱՅԾԱՌՈՒԹԵԱՆ

Ողբ. Կարօ Թուֆայեանի վաղաժամ եւ դառնակսկիծ մահուան տխուր առթիւ, վասն ցաւակցութեան Մօ. եւ Տիկին Եդուարդ Յակոբեան կը նուիրեն 100 ե.դ.։

(Ստանալ «Ջահակիր»էն)

### «ՃԱՀԱԿԻՐ» ԿԸ ՆՈՒԻՐԵՆ

Պր. Նուպար Կէրիկեան (Գահիրէ) մէկ տարուան «Ջահակիր» կը նուիրէ իր եղբօր՝ Պր. Գէորգ Կէրիկեանի (Մոնթրէալ)։

## ՍՏԱՑԱՆՔ

Օդային թղթատարով, շնորհակալութեամբ ստացած ենք ARMENIAN DIGESTի 1972 տարուան Սեպտեմբեր - Հոկտեմբեր միացեալ համարը։

Անգլերէն լեզուով այս գեղեցիկ հրատարակութիւնը, իր բազմահազար (25000) տպաքանակով, մեծապէս կը նպաստէ Հայութեան եւ Հայ Դատին, մանաւանդ անգլիախօս օտար շրջանակներէ ներս։

Հրատարակիչը եւ խմբագրութեան տնօրէնն է Պր. Յակոբ Թանգեան (Նազարենց)։

Տարեկան բաժնեգինն է ԱՄՆի համար 8 տոլար, Գանատայի համար 9 տոլար իսկ աշխարհի միացեալ երկիրներուն համար 10 տոլար։

Բաժանորդագրուելու համար դիմել՝

Armenian Digest
G.P.O. Box 638
New York, N.Y. 10001
(U.S.A.)

## ԱՐՏԱՍԱՀՄԱՆԻ ՄԷՋ

(Շար. Ա. էջէն)

Սովետական Միութեան կազմաւորման Յիսնամեակին առթիւ՝ արտասահմանի մէջ տեղի ունեցող փառատօներուն ընթացքին հայութեան բերած մեծ մասնակցութիւնը, երախտագիտական ժեստ մըն է հանդէպ այն մեծ միութեան, որուն հզօր ուժին շնորհիւ է որ մեր երկիրը այսօր կ'ապրի խաղաղ եւ [illegible] կը յառաջդիմէ։



## ԱՐՏԱՍԱՀՄԱՆԻ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Կը խնդրենք արտասահմանի մեր այն բաժանորդներէն, որոնք ցարդ չեն ղրկած իրենց բաժնեգինը, բարի ըլլան մեզի փութացնելու զայն դիւրացնելու համար մեր գործը։ Չեք կամ մանտա-փոստ գրել «JOURNAL TCHAHAKIR» անունին եւ ղրկել փոստարկղ թիւ 2111, Գահիրէ, ԵԱՀ։

# ՎԱՀԷ ՎԱՐԺԱՊԵՏԵԱՆԻ ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍԸ

ՅԱԿՈԲ ՇԱՀՆՈՒՐ

Հինգշաբթի, 14 Դեկտեմբեր 1972, Գալուստեան Ազգ. Վարժարանի «Գառզու» ցուցասրահին մէջ վայելեցինք երկրորդ ցուցահանդէսը՝ գաղութիս երիտասարդ նկարիչներէն Վահէ Վարժապետեանի։

Հոծ բազմութիւն մը պատասխանած էր բացման առթիւ տրուած հրաւէրներուն, քաջալերելու և խրախուսելու համար իսկապէս արժանի երիտասարդ արուեստագէտը։

Այս երկրորդ անգամուն, Վահէ Վարժապետեան մօտ քառասուն նկարներով կ'իջնէր ասպարէզ՝ սպասելով հայ հասարակութեան գնահատանքին, քաջալերանքին կամ... քննադատութեան եթէ կայ...։

Գոյներու բազմազանութեամբ և վրձինի յստակ հարուածներով՝ կենդանութիւն մը ստեղծած էր ան իր նկարներուն մէջ։ Ստեղծագործական իր յատ-

Երիտասարդ նկարիչէն հետ ունեցած տեսակցութեանս ընթացքին հաստատեցի՝ որ Վան Կոխ և Կոկէն համաշխարհային հռչակ ունեցող նկարիչներուն գործերը իր վրայ խոր ազդեցութիւն թողած են և ան հրապուրուած անոնցմէ, նոր թափով մը լծուած է ստեղծագործ աշխատանքի։

Թէև յաջողութիւն մը արձանագրեց Վահէ՝ բարոյապէս և նիւթապէս գնահատուելով հայ հասարակութենէն, սակայն մենք զմեզ աւելի հպարտ պիտի զգայինք, եթէ երիտասարդ նկարիչը, ելլելով հայ սահմանափակ շրջանակէն, օտարներուն ևս ցուցադրէր իր պաստառները, որպէսզի միջազգային շրջանակներու մէջ ալ իր անունն ու գործերը ճանաչում գտնէին և հայ անունը փառաւորուէր։

Թող այս տողերը մղեն զինքը, որ ջանք չի խնայէ իրա-



Վահէ Վարժապետեանի նկարչական ցուցահանդէսի բացման օր՝ պաշտօնական հրաւիրեալներէն մաս մը։

(Լուսանկար՝ ՀՐԱՆԴ)

կութիւնները երաշխիք են, որ նկարիչը մօտ ապագային ուսանելու և խորանալու ատոյգ հնարաւորութիւն ունի։ Սակայն թող ներուի ինծի ըսել, որ երիտասարդ նկարիչը տակաւին չէ գտած իր ԻՆՔՆՈՒՐՈՅՆ ոճը։

Եւ ասիկա հասկնալի է։

Վերջերս Անգլիոյ, Ֆրանսայի, Հոլանտայի, Լիւքսէմպուրկի, Պելճիքայի նկարչական թանգարաններ կատարած իր այցելութիւններն ու ուսումնասիրութիւնները՝ հոն ցուցադրուած վարպետներու գործերուն, իր վրայ բնականաբար որոշ ազդեցութիւն թողած են, սակայն հասարակութեան իրաւունքն է պահանջել իրմէ, որ ձերբազատուի այդ ազդեցութիւններէն և ստեղծէ իրը, սեփական դրոշմով։

Հեռու մեզմէ զինք յուսահատեցնելու որևէ փորձ. ոչ ալ կ'ուզենք պոռոտ գովասանքներ շռայլել։ Մեր անկեղծ ցանկութիւնն է, որ նօսրացած այս գաղութին մէջ, մեծերու անհետացումէն և մեկնումներէն ետք, նորեր գան գրաւելու հիներու բաց ձգած տեղը։

Խոստովանինք, որ իր նախորդ նկարչական ցուցահանդէսին հետ բաղդատելով, մեծ յառաջդիմութիւն մը արձանագրած է Վահէ։

Իր ցուցադրած գործերէն «Աքաղաղներու կռիւը» (թիւ 29), «Սէրը» (թիւ 30), «Նեղոսի Տեսարան» (թիւ 7), «Թութակը» (թիւ 22) կարելի է լաւագոյններէն նկատել։

գործելու համար մեր այս փափաքը։

Ըսինք, որ ապագայ խոստացող արուեստագէտի մը ճամբուն վրայ է ան։ Եթէ յարատևէ և ստեղծագործէ, ան հնարաւորութիւնը ունի արուեստի հորիզոնին վրայ փայլուն աստղ մը դառնալու, բան մը՝ որուն լիովին և սրտանց կը բաղձանք։

Ցայտնուած կարծիքներն ու գաղափարները լաւագոյն ուսուցիչները պէտք է նկատէ մեր սիրելի Վահէն, և անայլայլ մղումով մը շարունակէ ընթանալ՝ իր առջև բացուած արուեստի լոյս ճանապարհէն։

Ահա, այն ատեն է որ հայութիւնը իր գոգին մէջ պիտի պարուրէ զինքը՝ ջերմագին խանդաղատանքով և ինքն ալ պիտի ըմպէ արուեստի կենարար աղբիւրէն...։

Գահիրէ, 3 Յունուար 1973

## ԽՍԱՔ՝ ՈՒՂՂՈՒԱԾ ԲԱՐԵԿԱՄԻ

Բարեւ գիտէ դուք Գէորգին,
Թող չի կորսնի մտքն իր այրի.
Թէ չի դրկէ գինն ապրանքին.
Ալ չեմ ծախեր կօշիկ ոտքին.
Փուճ չի վաստկի թող իր վաստակն,
Ցարգը գիտնայ իր քրտինքին.
Խրատ է պէտք նոր սերունդին
Այս է մաղթանքը բոլորին։

ՀԱՅԿԱԶ ՏՈՒՐՍՈՒՆԵԱՆ

Աղեքս., 14 Նոյ. 1972

## ՍՏԱՑԱՆՔ

Խմբագրութիւնս շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ հրատարակութիւնները.

ԿՈՄԻՏԱՍԻ ՀԱՄԵՐԳԻՆ ՏԱԿ, հեղինակ Եդուարդ Յակոբեան։ Այս գեղատիպ կողքով հատորը՝ բաղկացած շուրջ 200 մեծադիր էջերէ՝ մաքուր թուղթի վրայ, հրատարակութիւնն է «Շիրակ» հրատարակչատան եւ լոյս տեսած է 1972ին Պէյրութի «Շիրակ» տպարանէն։

ԱՆԿԷԶ ՄՈՐԵՆԻ, հեղինակ Վահագն Դաւթեան։ Այս լեռնաստեղծութեանց գիրքը՝ 15000 տպաքանակով լոյս տեսած է «Հայաստան» հրատարակչութեան կողմէ՝ Երեւան – 1972ին։

ԼՈՒՍԱՍՏՂ, հեղինակ Յարութիւն Յովնաթան։ Բանաստեղծութեանց այս գրքոյկը՝ 3000 տպաքանակով լոյս տեսած է «Հայաստան» հրատարակչութեան կողմէ՝ Երեւան – 1971ին։

Վերոյիշեալ երկու գիրքերը նուէր տրուած են Յ. Յովնաթանի կողմէ։

ՎԱՐԴԵՐ ԵՒ ՓՇԵՐ, հեղինակ Նուէրն Մուրատեան։ Լոյս տեսած է «Հայաստան» հրատարակչութեան կողմէ՝ 5000 տպաքանակով, 1972ին՝ Երեւան, խմբագրութեանս նուէր տրուած է հեղինակին կողմէ մակագրուած։

ՑԻՍՈՒՆ ՏԱՐԻ ՍՓԻՒՌՔԻ ՄԷՋ – ՅՈՒՇԵՐ ԵՒ ՅԻՇԱՏԱԿՆԵՐ, հեղինակ Մեսրոպ Կ. Գույումճեան, հրատարակուած Գահիրէի մէջ 1972ին։

ՀԱՅՐԵՆԻ ԵՐԳ ՈՒ ԲԱՆ, հեղինակ Միհրան Թումաճեան։ Հրատարակութիւն՝ Հ.Ս.Ս.Հ. Գիտութիւններու Ակադեմիայի, Երեւան 1972։ Գեղատիպ հրատարակութիւն, խմբագրութիւն՝ Ռ. Ա. Աթայեանի։ 5000 տպաքանակով այս արժէքաւոր հատորը խմբագրութեանս նուիրուած է հեղինակին կողմէ։

ՅՈՒՇԱՄԱՏԵԱՆ՝ Հ. Բ. Ը. Մ. -40- Մ Կ Հ. (1932-1972) Կիպրոսի Մելգոնեան Կրթական հաստատութեան Արիական Շարժումին 40 ամեակին նուիրուած։ Տպարան «Սեւան» Պէյրութ։

ԱԼՊՈՄ – ՏԱՐԵԳԻՐՔ Ազգային Ռուբինեան Վարժարանի (Պէյրութ)։ Տպարան «Շրակ» Պէյրութ։

«ՋԱՀԱԿԻՐ»ի գրադարանին իբր նուէր ղրկած են.

ԿԻՐՈՎԱԿԱՆԷՆ՝ Խաչիկ Էմինեան, «ԵՐԵՒԱՆԻ ՅՈԲԵԼԵԱՆԸ», հրատ. Երեւան – 1972։

ԿԻՐՈՎԱԿԱՆԷՆ՝ Մարգար Աւետիքեան, «ՈՒԻՆՍԹԸՆ ՉԸՐՉԻԼ», հեղինակ Վ. Գ. Տրուխանովսկի, հրատ. Երեւան – 1972։

## ՍՏԱՑՈՒԱԾ ՕՐԱՑՈՅՑՆԵՐ

ԱԼՊԵՐ Վ. ՇՄԱՒՈՆԵԱՆի հրատարակած 1973ի պատի պատկերազարդ օրացոյցը, Եգիպտահայութեան հեռախօսներու թիւերուն գրքոյկով եւ Գահիրէ ու Աղեքսանդրիա քաղաքներուն զբօսաշրջիկային քարտէզներով։

Հ.Բ.Ը.Մ.ի 1973ի ՊԱՏԻ ՕՐԱՑՈՅՑԸ, Հայաստանեան բազմագոյն նկարով մը զարդարուած եւ ամսաբաժանական թերթիկներով։







## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

| | Պարզ փոստ | Օդային փոստ |
|---|---|---|
| Եգիպտոսի բաժանորդներէն | 160 Ե.Դ. | — |
| Սուտանի « | 160 Ս.Դ. | 225 Ս.Դ. |
| Լիբանանի « | — | 15 Լ.Ո. |
| Սուրիոյ « | — | 20 Ս.Ո. |
| Եւրոպայի, Ամերիկայի, Գանատայի, Աւստրալիոյ եւ այլ երկիրներու բաժանորդներէն | 12 Տոլար կամ 5 Ոսկի | 25 Տոլար |

ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀԻ «ԵՐԵՒԱՆ» պատի օրացոյցը (1973), գունաւոր եւ հայաստանեան 12 մեծադիր լուսանկարներով։

ՋԱՀԱԿԻՐ
ԹԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
15 ՄԱՐՏ 1973

## ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀԷՆ ՆԵՐՍ

# ԲԱՐԵԿԵՆԴԱՆԻ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Գահիրէի Հայկական Ընթերցասրահի այն բոլոր բարեկամները, անդամներն ու համակիրները, որոնք ներկայ գտնուեցան Բարեկենդանի առթիւ կազմակեր-



«ԿԱԽԱՐԴԸ»
(Աւետիս Մովսէսեան)
(Լուսանկարներ՝ ՀՐԱՆԴԻ)

պուած դիմակաւոր և անդիմակ պարահանդէսին՝ որ տեղի ունեցաւ Շաբաթ, 3 Մարտ 1973, կ.ե. ժամը 9.30էն սկսեալ, հաճելի պահեր անցուցին ու զուարճացան մինչև առաւօտեան փոքր ժամերը։

Սրահին վարչութիւնը եւ Տիկնանց Յանձնախումբը օրեր շարունակ աշխատանքի լծուած էին, բծախնդրօրէն կազմակերպելու այս պարահանդէսը՝ որ տարիներէ ի վեր կանոնաւորապէս կը կազմակերպուի եւ տեսակ մը աւանդութիւն դարձած է սրահի գործունէութեան ծիրէն ներս։

Այս առթիւ սրահը գեղեցկօրէն զարդարուած էր և գոյնզգոյն



«ՀԻՓԻ»
(Ժոզէֆ Հաճէթեան)

լոյսերու մէջ կը շողար։ Այս աշխատանքը կատարած էին սրահի Հ.Մ.Մ.ական երիտասարդները։

«The Young Ones» խանդավառ նուագախումբը իր կարգին բերաւ յաջող մասնակցութիւն, խանդավառելով բոլորը եւ մանաւանդ պարի սիրահար երիտասարդ զոյգերը, որոնք ժամեր շարունակ առանց յոգնութեան նշան իսկ ցոյց տալու զուարճացան։

Համադամ կերակուրները՝ որոնք ճաշացուցակին մաս կը կազմէին, պատրաստուած էին սրահին ճարտար տիկիններուն կողմէ։

Կէս գիշերին տեղի ունեցաւ ծպտեալներուն տողանցքը։ Թիւով 13 ծպտեալներէն իւրաքանչիւրը՝ իր ծպտումը բնորոշող շարժուձեւերով շրջեցաւ հանդիսականներուն առջեւ։ Այս առթիւ նշանակուած դատական մարմինը՝ բաղկացած՝ Տիկիններ Գ. Թաքորեանէ, Մ. Բրուտեանէ, ՕՕ. Տոքթ. Ն. Սիմոնեանէ, Ս. Էօժիւրեանէ, Ց. Ջամպազճեանէ եւ Ռ. Շիմշիրեանէ ծպտեալներուն դասաւորումը կատարեց հետեւեալ կարգով.

ա.— «Կախարդը» (Աւետիս Մովսէսեան)։

բ.— «Հիփի» (Ժոզէֆ Հա-



«ԱՐՋԸ»
(Պերճ Ասլանեան)

ճէթեան) և «Արջը» (Պերճ Ասլանեան)։

գ.— «Արաբական խումբը» (Անահիտ Համբարձումեան, Վարդան Մովսէսեան և երկու փոքրիկներ)։

Մրցանակի արժանացած ծպտեալները ստացան արժէքաւոր մրցանակներ, իսկ մնացեալ բոլոր ծպտեալներուն տրուեցան քաջալերական նուէրներ։

Պարահանդէսի ընթացքին տեղի ունեցաւ նաեւ վիճակահանութիւն մը։ Արժէքաւոր պարգեւները սիրայօժար տրամադրուած էին համայնքիս կարգ մը առատաձեռն անդամներուն կողմէ։

Վստահ ենք որ բոլոր ներկաներն ալ մեզի նման գոհունակ հրաժեշտ առին, մտադրելով ամէն տարի չբացակայիլ Բարեկենդանի առթիւ Հայկական Ընթերցասրահին կողմէ կազմակերպուելիք պարահանդէսներէն։

Ն. Մ.

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Գահիրէի Ազգային Առաջնորդարանը պէտք ունի դիւանատան պաշտօնեայի մը, քարտուղար կամ քարտուղարուհի, որ գիտնայ հայերէն և արաբերէն լեզուները գրել և կարդալ, վարելու համար Ե.Գ.Մ. Հոգաբարձութեան և Ազգային Տուրքի Յանձնաժողովի քարտուղարութիւնը։

Գրաւոր դիմումնագիր ներկայացնել Ազգային Առաջնորդարանս, ամէն օր, առաւօտեան ժամը 9էն 1, բացի Կիրակի և տօն օրերէ։

ԴԻՒԱՆ ԳԱՀԻՐԷԻ
ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

## ԱՂԵՔՍ. ԱՂՔԱՏԱԽՆԱՄԻՆ

Տէր և Տիկին Թորոս Տէր Ղազարեան 100 ե.դ., ողբ. Թամար Թիւն Գարահիսարեանի (Մոնթրէալ) մահուան տխուր առթիւ։

## «ՋԱՀԱԿԻՐ»ԻՆ

Պր. Գրիգոր Մարթայեանի ընդ Օր. Սիլվիա Սահակեանի բարեբաստիկ ամուսնութեան ուրախ առթիւ, Տէր և Տիկին Միսաք Տընկճեան կը նուիրեն 100 ե.դ.։

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

### (ԵԳԻՊՏԱԿԱՆ ԴԱՀԵԿԱՆՈՎ)

Այրի Տիկին Լուիզ Բամպուքճեան, իր կողակցին՝ յաւէտ ողբացեալ Գէորգ Բամպուքճեանի մահուան քառասունքին առթիւ և անոր անթառամ յիշատակին կը նուիրէ.

| | |
|---|---|
| Աղքատախնամին | 1000 |
| Գալուստեանի ճաշի սեղանին | 1000 |
| Այծեմնիկին | 1000 |
| Նուպարեանի ճաշի սեղանին | 500 |
| «Արեւ»ին | 500 |
| «Յուսաբեր»ին | 500 |
| «Ջահակիր»ին | 500 |

Տոքթ. և Տիկին Լեւոն Խաչուպեան (Դամասկոս) իրենց սիրեցեալ հօր՝ ողբ. Գէորգ Բամպուքճեանի մահուան քառասունքին առթիւ և անոր անթառամ յիշատակին կը նուիրեն.

| | |
|---|---|
| Աղքատախնամին | 1000 |
| Գալուստեանի ճաշի սեղանին | 1000 |
| Այծեմնիկին | 1000 |
| Նուպարեանի ճաշի սեղանին | 500 |
| «Արեւ»ին | 500 |
| «Յուսաբեր»ին | 500 |
| «Ջահակիր»ին | 500 |

(Ստանալ Նուիրատուէն)

Վիրաբուժական գործողութենէ մը ետք իր ապաքինման ուրախ առիթով, ը՛կ․ր Արմենակ Էլպէկեան կ՚ընէ հետեւեալ նուիրատուութիւնները.

| | |
|---|---|
| Եկեղեցւոյ պայծառութեան | 100 |
| Աղքատախնամին | 100 |
| Գալուստեանի ճաշի սեղանին | 100 |
| Նուպարեանի ճաշի սեղանին | 100 |
| Այծեմնիկի Հանգստեան Տան | 100 |
| Հ.Բ.Ը. Միութեան | 100 |
| Հայկական Ընթերցասրահին | 100 |
| «Արեւ»ին | 100 |
| «Յուսաբեր»ին | 100 |
| «Ջահակիր»ին | 100 |

(Ստանալ «Ջահակիր»էն)

Այրի Տիկին Մարի Կէրիկեան և զաւակունք, իրենց ամուսնոյն և հօր՝ ողբ. Արամ Կէրիկեանի մահուան 12րդ տարելիցին առթիւ և անոր քաղցր յիշատակին կը նուիրեն.

| | |
|---|---|
| Եկեղեցւոյ պայծառութեան | 100 |
| Աղքատախնամին | 100 |
| Գալուստեանի ճաշի սեղանին | 100 |
| Նուպարեանի ճաշի սեղանին | 100 |
| Այծեմնիկի Հանգստեան Տան | 100 |
| Հայ Կարմիր Խաչին | 100 |
| Հայկական Ընթերցասրահին | 100 |
| «Արեւ»ին | 100 |
| «Յուսաբեր»ին | 100 |
| «Ջահակիր»ին | 100 |

(Ստանալ «Ջահակիր»էն)

## ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀԻՆ

ՈՄ, իր զաւակին տարեդարձին ուրախ առթիւ կը նուիրէ 100 ե.դ.։

Ողբ. Սաթենիկ Պարոնեանի կսկծալի մահուան տխուր առթիւ վասն ցաւակցութեան, Տէր և Տիկին Զաւէն Պալեան կը նուիրեն 100 ե.դ.։

## ՊՕՂՈՍԵԱՆԻ ՃԱՇԻ ՍԵՂԱՆԻՆ

ՈՄ, ընկ. Թիւ 3415, 500 ե.դ., իր նուէրը։

## ԳԱԼՈՒՍՏԵԱՆԻ ՃԱՇԻ ՍԵՂԱՆԻՆ

Ողբ. Գէորգ Բամպուքճեանի մահուան քառասունքին առթիւ կը նուիրեն.

| | |
|---|---|
| Տիկին Հերմինէ Դաւիթեան | 500 |
| Տէր և Տիկ. Արամ Թագւորեան | 500 |

(Լիբանան)

## ՍՏԱՑԱՆՔ

Շնորհակալութեամբ ստացանք, գրող Երուանդ Պարսումեանի՝ «Ծոցք ի Ծաւ» պատմուածքներու հատորը, հեղինակին կողմէ մակագրուած։

Այս գիրքը՝ որ կը բաղկանայ 204 էջերէ, լոյս տեսած է Պէյրութի մէջ՝ «Սեւան» տպարանէն։

Ստանալու համար դիմել հեղինակին.

E. BARSOUMIAN
P.O. Box 6651
Beirut, Lebanon

# ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀ
## ԳԱՀԻՐԷ

Այսօր, Հինգշաբթի, 15 Մարտ 19 3, կ.ե. ժամը 9|ն

## ԳԻՏԱԿԱՆ ԵՐԵԿՈՅԹ

ԿԸ ԴԱՍԱԽՕՍԷ
ԸՆԿԵՐ ԽԱՉԻԿ ԳԱՍԱՊԵԱՆ
ՆԻՒԹ ՈՒՆԵՆԱԼՈՎ
«ԻՆՉՊԷՍ ԿԸ ՊԱՏՐԱՍՏՈՒԻ ՓՈՇԻ ՕՃԱՌԸ» (SAVO)
Ներկաներուն զանազան անակնկալներ
Հայ հասարակութիւնը սիրով կը հրաւիրուի

Հինգշաբթի, 22 Մարտ 1973, կ. ե ժամը 8.30ին

ՄԱՅՐԵՐՈՒ ՏՕՆԻՆ ԱՌԹԻՒ
## ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹԻՒՆ Ի ՊԱՏԻՒ ՀԱՅ ՄԱՅՐԵՐՈՒՆ
ՍԻՐԱԼԻՐ ՀՐԱՒԷՐ ԲՈԼՈՐԻՆ

Կիրակի, 25 Մարտ 1973, առաւօտեան ժամը 8.30ին

## ՋՐՕՍԱՊՏՈՅՏ ԴԷՊԻ ՖԱՅՈՒՄ

Մասնակցութեան սակ՝ (կէսօրուայ ճաշով) 160 ե.դ.
(անդամներուն մասնաւոր զեղչ)
Արձանագրութիւնները կը փակուին Հինգշաբթի 22 Մարտին



# ՋԱՀԱԿԻՐ

**ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ**

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج ع م - ت ٩١٥٠١٣
صاحبة الامتياز، السيدة عايدة سيروبيان (بالايان)

TCHAHAKIR
HEBDOMADAIRE ARMENIEN
B.P. 2111 Le Caire (R.A.U.) · Tél.915013
Adresse Télégraphique TCHAHAKIR, Cairo
Rédacteur en chef ; SARKIS BALAYAN

*Արտօնատէր — ԱՅՏԱ ՍԵՐՈՎԲԵԱՆ*
*Սեփականատէր խմբագիր — ՍԱՐԳԻՍ ՊԱԼԱՅԵԱՆ*

*Հիմնուած 1948ին*
*Տպաքանակ 3000*

ՆՈՐ ՇՐՋԱՆ ԹԻՒ 472 — ՀԻՆԳՇԱԲԹԻ 29 ՄԱՐՏ 1973 | ՀԱՏԸ ՋԵՌՈՒԲԷ 3 եգ. դհկ. կամ 25 Լիր. դհկ. | عدد رقم ٤٧٢ — الخميس ٢٩ مارس ١٩٧٣


## ՆԻՒ ԵՈՐՔԻ ՄԷՋ

## «ԿՈՄԻՏԱՍ» ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻՆ ՀԱՄԵՐԳԸ

Թուականէս 25 տարիներ առաջ կազմուեցաւ՝ Նիւ Եորքի «Կոմիտաս» երգչախումբը, նախաձեռնութեամբ եւ կազմակերպութեամբ ՊՊ. Իսահակ Աբրահամեանի, Արա Գոճալեանի եւ Օննիկ Հեպէճեանի։

Ցայսօր ատամնաբոյժ Տոքթ. Արթիւր Միսեան, որ երգչախումբին երաժշտական ղեկավարն է, իր ամբողջ կարելին ի գործ կը դնէ խումբին երգացանկը ճոխացնելու, հայ երգը հայուն սեփականութիւնը դարձնելու առաջադրութեամբ։



*«Կոմիտաս» երգչախումբին կազմը Նիւ Եորքի «Թաուն Հոլ»ի մէջ, 11 Մարտ 1973ի համերգի ընթացքին*
*(Լուսանկարները՝ ՍԱՐԳԻՍ ՊՕՂՈՍԵԱՆԻ)*

Այս երգչախումբը 15 տարիներէ ի վեր կը վայելէ Նիւ Եորքի Հայաստանեայց Եկեղեցւոյ Առաջնորդարանին հովանաւորութիւնը։

«Կոմիտաս»ի անունով այս երգչախումբը, իր կազմութենէն ի վեր բազմաթիւ անգամներ ելոյթներ ունեցած է ԱՄՆի, ինչպէս նաեւ Գանատայի զանազան քաղաքներու մէջ եւ ամենուրեք սփռած է հայ երգը եւ անմահն Կոմիտասի շունչը։

Երգչախումբին բոլոր անդամները ու ղեկավարները անվճար մասնակցութեամբ իրենց բաժինը կը բերեն այս օգտաշատ գործին։

«Կոմիտաս» երգչախումբին կազմաւորման 15 ամեակին առթիւ, շքեղ համերգ մը կազմակերպուեցաւ Կիրակի, 11 Մարտ 1973, կ. ե. ժամը 5ին, Նիւ Եորքի «Թաուն Հոլ»ի մէջ։



*Մեներգչուհի Լիւսի Ժամկոչեան, ջութակահարուհի Անի Գավաֆեան եւ ղեկավար Ճահան Արծրունի։*

Համերգասրահը լեցուած էր երաժշտասէրներով։ Երգչախումբը, բաղկացած 80 երկսեռ անդամներէ եւ իբր հիւր ղեկավար ունենալով Ճահան Արծրունին, յաջողութեամբ կատարեց Կոմիտասի՝ «Ուրախ Լեր», «Սիրտ իմ Սասանի»ն (մեներգ՝ սոփրանօ Վարսէն Սարգիսեան),

(Շար. տես էջ 6)

## ՀԱՄԲԱՒԱՒՈՐ ՀԱՅ ՆԿԱՐԻՉ ԳԱՌԶՈՒ

### ԵԳԻՊՏՈՍ ԿՈՒ ԳԱՅ

Հաւաստի աղբիւրէ կը տեղեկանանք, որ Գահիրէի Գալուստեան Ազգ. Վարժարանի Ծնողաց Խորհուրդին հրաւէրին ընդառաջելով, յառաջիկայ Ս. Զատկուան շաբթուան ընթացքին Եգիպտոս պիտի ժամանէ՝ աշխարհահռչակ հայազգի նկարիչ ԳԱՌԶՈՒ (Գառնիկ Զուլումեան)։

Ինչպէս յայտնի է, Գառզու՝ նախկին Եգիպտաբնակ այժմ Ֆրանսահայ, իր նախնական կրթութիւնը ստացած է Գահիրէի Գալուստեան

(Շար. տես էջ 8)

## ՆԱԽԱԳԱՀ ԱՆՈՒԱՐ ԷԼ ՍԱՏԱԹ

## ՍՏԱՆՁՆԵՑ ԵԳԻՊՏՈՍԻ ՎԱՐՉԱՊԵՏՈՒԹԻՒՆԸ

Երկուշաբթի երեկոյեան, Եգիպտոսի Նախագահը՝ Անուար էլ Սատաթ, ազգին ուղղած իր կարեւոր ճառին մէջ յայտարարեց, թէ որոշած է ինք անձամբ ստանձնել Նախարարաց Խորհուրդին նախագահութիւնը, եւ բացատրեց այն պատճառները՝ որոնք մղած էին զինք առնելու այս կարեւոր նախաձեռնութիւնը։

Անուար էլ Սատաթ նոյն օր կէսօրէ առաջ գումարուած՝ Արաբ Ընկերվար Կուսակցութեան Կեդրոնական Կոմիտէին եւ Ազգային Ժողովին միացեալ նիստին ընթացքին կատարած իր ճառին մէջ մասնաւորեց, որ անցնող հնգամեակին ընթացքին հակասութիւններ երեւան եկած էին եւ հետեւաբար իր «յոյսերը» իր փափաքած չափով չէին իրականացած։

Նախագահը իր այս ճառին մէջ վերատեսութիւն մը կատարեց Եգիպտոսի կողմէ աշխարհի մէջ կատարուած դիւանագիտական աշխատանքներուն վրայ, եւ անկէ ստացուած գլխաւոր դասերը մատնանշեց։

Դատապարտելէ ետք Ա.Մ.Ն.ի կեցուածքը, Նախագահը ըսաւ, որ Պր. Հաֆեզ Իսմայիլի առաքելութիւնը,



միմիայն կը կայանար Ամերիկայի ղեկավարներուն ուշադրութիւնը՝ Միջին Արեւելքի կացութեան բռնկեցուցիչ հանգամանքին վրայ հրաւիրելը։ Ապա ան հաստատեց որ Եգիպտոսի դիրքը անփոփոխ կը մնայ, այսինքն.

— Ոչ մէկ հողային զիջում.
— Ոչ մէկ մասնակի լուծում.
— Ոչ մէկ սակարկութիւն՝ Պաղեստինցի ժողովուրդին իրաւունքներուն շուրջ։

### ՏՈՔԹ. ՀԱՖԵԶ ՂԱՆԷՄ ԱՐԱԲ ԸՆԿԵՐՎԱՐ ՄԻՈՒԹԵԱՆ Ա. ՔԱՐՏՈՒՂԱՐ ԸՆՏՐՈՒԵՑԱՒ

Եգիպտոսի Արաբ Ընկերվար Միութեան առաջին քարտուղար ընտրուեցաւ Տոքթ. Հաֆեզ Ղանէմ։

Նախորդ ա. քարտուղար Պր. Սայէտ Մարէյի հրաժարումէն ետք, անցեալ Երկուշաբթի, 26 Մարտ 1973, նախագահ Անուար էլ Սատաթ նիստի հրաւիրած էր Կեդրոնական Կոմիտէն, նոր առաջին քարտուղարի մը ընտրութեան համար։ Այս նիստին ընթացքին Տոքթ. Հաֆեզ Ղանէմ, այդ պաշտօնին համար թեկնածութիւն ներկայացնող միակ անձը ըլլալուն, միաձայնութեամբ ընտրուեցաւ առաջին քարտուղար։

## ԳԱՀԻՐԷԻ ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ ՀԱՄԱՅՆՔԻՆ ԿՈՂՄԷ

## ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹԻՒՆ

### Ի ՊԱՏԻՒ ՊԱՂՏԱՏԻ ՆՈՐԸՆՏԻՐ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ

## ԳԵՐՊ. Տ. ՅՈՎՀԱՆՆԷՍ ԳԱՍՊԱՐԵԱՆԻ

*Անցեալ Հինգշաբթի, 22 Մարտ 1973, կ. ե. ժամը 7.30ին, Գահիրէի Հայ Կաթողիկէ Համայնքին կողմէ կազմակերպուած էր Ընդունելութիւն մը՝ «Սեմիրամիս» պանդոկին մէջ, ի պատիւ Նորոգ եպիսկոպոս օծեալ Գերապայծառ Տ. Յովհ. Արք. Գասպարեանի, որ վերջերս նշանակուած է Առաջնորդ՝ Իրաքի հայ Կաթողիկէ թեմին։*

*Ընդունելութեան սրահի մուտքին հրաւիրեալները կ'ընդունուէին կազմակերպիչ յանձնախումբին կողմէ եւ ապա շնորհաւորելէ ետք Գահիրէի վիճակաւոր Գերպ. Տ. Ռափայէլ Եպս. Պայեանն ու Պաղտատի նոր առաջնորդը՝ Գերպ. Տ. Յովհ. Արք. Գասպարեանը, կ'առաջնորդուէին դէպի նախ պիւֆէները, ուր զանազան խմիչքներով եւ աղանդերներով կը հիւրասիրուէին բոլորը։*

*Այս գեղեցիկ ընդունելութեան ներկայ գտնուեցան Կաթողիկէ դաւանանքի բազմաթիւ համայնքներու վիճակաւորներն ու հովուապետները, Գահիրէի մէջ Իրաքի [illegible]հիւպատոս Ապտէլ Քէրիմ էլ Աանին, հայ առաքելական, աւետարանական եւ կաթողիկէ համայնքներուն իշխանութեանց անդամները, հայ մամուլի խմբագիրներ, հայ մշակութային, կրթական, բարեսիրական եւ մարզական կազմակերպութեանց ղեկավար անդամներ եւ այլ հրաւիրեալներ։*



Գահիրէի «Սեմիրամիս» պանդոկին մէջ՝ ի պատիւ Գերպ. Տ. Յովհ. Արք. Գասպարեանի տրուած ընդունելութեան ընթացքին։ Ձախէն աջ ՊՊ. Ա. Սարուխան, Պ. Պետիկեան, Գերպ. Տ. Յովհ. Արքեպիսկոպոս, ՊՊ. Ժօրժ Միքայէլեան, Ս. Պալայեան եւ Հայր Պետրոս Թարմունի

*Ներկայ գտնուող բարձր հոգեւորականներէն նշենք. Պապական Նուիրակը՝ Գերպ. Գրունօ*

(Շար. տես էջ 3)

ՁԱՀԱԿԻՐ
ՕՁԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԹԵՐԹԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

29 ՄԱՐՏ 1973

## «ԿՈՄԻՏԱՍ» ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻՆ ՀԱՄԵՐԳԸ

(Շարունակութիւն Ա. էջէն)

Ալան Յովհաննէսի՝ «Նա ոչ ամաչէր», «Միայն Սուրբ»ը, Կոմիտասի՝ «Ո՞վ Զարմանահրաշ»ը (մեներգող՝ քենոր Օննիկ Տէօքմէճի), Արա Պարթեւեանի՝ «Հայր Մեր»ը, Կոմիտասի՝ «Սուրբ, Սուրբ»ը եւ Վարդան Սարգիսեանի՝ «Լոյս»ը:

«Համբարձում Եայլա»ն (Արմէն Տիգրանեանի), «Անուշիկ Եար ձան» (Գուրգէն Ալեմշահի), «Հունձք» (Ալեմշահի), «Հունձք կը ժողվեմ» (Սիրվարդ Գարամանուկի), «Մարտիկի երգ» եւ «Լուր գնաց» (Ասոս Սաքեանի), ինչպէս նաեւ Ամերի-



«Կոմիտաս» երգչախումբին երաժշտական ղեկավար Տոքթ. Արթուր Միսեան եւ հիմնադիր անդամ Պր. Իսահակ Աբրահամեան:

կայի համար առաջին ունկնդրութիւն՝ կատարեցաւ Առօ Պապանեանի «Սոնաք՝ ջութակի եւ դաշնամուրի համար»ը, հանրածանօթ ջութակահարուհի Անի Գավաֆեանի եւ դաշնակահար Շահան Արծրունիի կողմ։

Դադարէն ետք, յայտագիրին երկրորդ բաժինին մէջ, Տոլորէս Հոլցի նուագակցութեամբ եւ մենակատարներ ունենալով սոփրանոներ Լիւսի Ժամկոչեան, Վարսէն Սարգիսեան եւ Մարիլին Մըլվէյ, եւ քենոր՝ Օննիկ Տէօքմէճի, երգչախումբը յաջորդաբար կատարեց Ամերիկայի համար առաջին ունկնդրութիւն՝ Կոմիտասի «Պարի երգեր»ը.

ա.— Եարս անուն բալասան
բ.— Աղջի անունդ Շուշան
գ.— Կալերի նամբին կեցայ
դ.— Բաղի պատը քքում ա
ե.— Պուլուր աղջիկ սեւաւոր
զ.— Վարդ ա եարս
է.— Հոյ, իմ նազանի եարը

Հանդիսականները ջերմ ծափահարութիւններով ողջունեցին՝ երգչախումբն եւ մենակատարները յաջող ելոյթները:

Լուսանկարները եւ Թղթակցութիւնը
ԿԱՐՊԻՍ ՊՕՂՈՍԵԱՆԻ
Նիւ Եորք

## ԴՊՐՈՑԱԿԱՆ ՀԱՐՑԵՐ

(Շարունակութիւն Ե. էջէն)

Ուրախ ենք տեղեկանալով, որ Ազգային Իշխանութիւնը (Գահիրէ), օրակարգի անցուցած է «դպրոցական հարց» մը եւս, բայց այս անգամ նոր մօտեցումով մը, որ է՝ ԴԱՀԻՐԷ ՀԱՄԱՅՆՔԻՆ ՕԺՏԵԼ ԵՐԿՐՈՐԴԱԿԱՆ ՎԱՐԺԱՐԱՆՈՎ ՄԸ:

[illegible]

Ծ. Խ.— Կը տեղեկանանք, որ Գալուստեան Բարձրագոյն Նախակրթարանի 38 ուսանողները [illegible]

Մեր սիւնակները տրամադրելի են հանրութեան՝ [illegible]

## Հ.Մ.Ը.Մ.-ՆՈՒՊԱՐ, ՀԷԼԻՈՊՈԼԻՍ

Կիրակի, 1 Ապրիլ 1973

ԿԷՍՕՐՈՒԱՅ ՃԱՇԻ ՍՊԱՍԱՐԿՈՒԹԻՒՆ

Ախորժաբեր ճաշի-ցուցակ [illegible] փիազ, աղցան եւ անուշեղէն

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

(ԵԳԻՊՏԱԿԱՆ ԴԱՀԵԿԱՆՈՎ)

Օրդ. Ալիս եւ Անահիտ Ծինկէօզեաններ, իրենց շատ սիրելի եւ անմոռանալի մօր՝ ողբ. Ազատուհի Ծինկէօզեանի մահուան Ա. տարելիցին առթիւ կ'ընեն հետեւեալ նուիրատուութիւնները.

Գօզոս Գէորոս

| | |
|---|---|
| Եկեղեցւոյ Գայծառութեան | 500 |
| Աղեքս. Աղքատախնամին | 500 |
| Գօզոսեանի ճաշի սեղանին | 500 |
| Այծեմնիկի Հանգստեան Տան | 500 |
| «Տիգրան Երկաթ» | 500 |
| Մշակ. Միութեան | 500 |
| Հ.Մ.Ը.Մ.-Նուպար (Աղեքս.) | 500 |
| «Արեւ»ին | 500 |
| «Ջահակիր»ին | 500 |

Իրենց եղբօր կնոջ ողբ. Ազատուհի Ծինկէօզեանի մահուան Ա. տարելիցին առթիւ, Տէր եւ Տիկին Ծինկէօզեան եւ զաւակունք (Գանատա) կը նուիրեն.

| | |
|---|---|
| «Արեւ»ին | 100 |
| «Ջահակիր»ին | 100 |

Իրենց սիրելի քրոջ եւ հօրաքրոջ, ողբ. Ազատուհի Ծինկէօզեանի մահուան Ա. տարելիցին առթիւ, Տէր եւ Տիկին Խաչատուր Կանանեան եւ զաւակը (Գանատա) կը նուիրեն.

| | |
|---|---|
| «Այծեմնիկ»ի Հանգստեան Տան | 100 |
| Տիգրան Երկաթ | |
| Մշակ. Միութեան | 100 |
| Հ.Մ.Ը.Մ.-Նուպար (Աղեքս.) | 100 |
| «Արեւ»ին | 100 |
| «Ջահակիր»ին | 100 |

Իրենց սիրելի քրոջ՝ ողբ. Ազատուհի Ծինկէօզեանի մահուան Ա. տարելիցին առթիւ, Տէր եւ Տիկին Հրանդ Մանուկեան եւ զաւակունք (Գանատա) կը նուիրեն.

| | |
|---|---|
| Այծեմնիկի Հանգստեան Տան | 100 |
| Տիգրան Երկաթ | |
| Մշակ. Միութեան | 100 |
| Հ.Մ.Ը.Մ.-Նուպար (Աղեքս.) | 100 |
| «Արեւ»ին | 100 |
| «Ջահակիր»ին | 100 |

(Ստանալ Պր. Եր. Գալփաքճեանէ)

Իրենց սիրելի դուստր Օր. Արաքսի Տէրունեանի՝ Ամերիկեան համալսարանը փայլուն յաջողութեամբ աւարտելով Գաւկասր Գիտութեանց (Պաչըլըր օֆ Սայընս) տիտղոսին տիրանալուն ուրախ առթիւ, Տէր եւ Տիկին Միսաք Տէրունեան կը նուիրեն.

| | |
|---|---|
| Եկեղեցւոյ Գայծառութեան | 100 |
| Արգարեան Դարմանատան | 100 |
| Աղքատախնամին | 100 |
| Նուպարեանի ճաշի սեղանին | 100 |
| Գալուստեանի ճաշի սեղանին | 100 |
| Կոկանեան Սրահին | 100 |
| Հայ Գեղ. Միութեան | 100 |
| Հայկական Ընթերցասրահին | 100 |
| «Արեւ»ին | 100 |
| «Ջահակիր»ին | 100 |

(Ստանալ «Արեւ»էն)

Տէր եւ Տիկ. Գենոն Գարկայեան, ողբ. Ֆէրտինանտ Սահակեանի մահուան տխուր առթիւ կը նուիրեն.

| | |
|---|---|
| Աղեքս. Աղքատախնամին | 100 |
| Գօզոսեանի ճաշի սեղանին | 100 |

Այրի Տիկ. Սաթենիկ Խաչերեան, իր համայն ննջեցեալներու յիշատակին կը նուիրէ.

| | |
|---|---|
| Աղեքս. Աղքատախնամին | 100 |
| Գօզոսեանի ճաշի սեղանին | 100 |

### ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺ.Ի ԾՆՈՂՔ-ՈՒՍՈՒՑԻՉ ՄԻՈՒԹԵԱՆ

Դէպի հայրենիք իրենց բարեյաջող մեկնումին ուրախ առթիւ կը նուիրեն.

| | |
|---|---|
| Տիկին Եասմիկ Տէտէեան | 200 |
| Տիկին Զիզի Յակոբեան | 200 |

(Ստանալ «Ջահակիր»էն)

### Հ.Մ.Ը.Մ.-ՆՈՒՊԱՐԻՆ ՀԷԼԻՈՊՈԼԻՍ

Ողբ. Տիգրան Առաքելեանի (Գանատա) մահուան տխուր առթիւ, Տէր եւ Տիկին Արամ Գազազեան կը նուիրեն 100 ե.դ.։



### ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀԻՆ

Մայրերու Օրուան ընդունելութեան առ ի գոհունակութիւն, Տէր եւ Տիկին Հայկ Իբրահեան կը նուիրեն 100 ե.դ.։

Ողբ. Յարութիւն Սիւրմէնեանի մահուան քառասունքին առթիւ, Տէր եւ Տիկին Նուպար Զօրայեան կը նուիրեն 100 ե.դ.։

Ողբ Գէորգ Բամպուքճեանի մահուան քառասունքին առթիւ, Տէր եւ Տիկին Նուպար Զօրայեան կը նուիրեն 100 ե.դ.։

### «ՋԱՀԱԿԻՐ» ԿԸ ՆՈՒԻՐԵՆ

Պր. Փօլ Քիլիտճեան մէկ տարուան «Ջահակիր»ի բաժանորդագրութիւն (օդային թղթատարով) կը նուիրէ եթովպաբնակ իր սիրելի բարեկամին եւ ընկերոջ՝ Պր. Վահրիճ Գասմաճեանին (Ատիս Ապեպա):